Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 22 ՆՈՅԵՄԲԵՐ 1949

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Կ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։

---

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 32-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ ՄՈՍԿՎԱՅԻ ՍՈՎԵՏԻ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ 1949 ԹՎԻ ՆՈՅԵՄԲԵՐԻ 6-ԻՆ

*Ընկերնե՛ր.*

*Այսօր Սովետական Միության ժողովուրդները և արտասահմանի մեր բարեկամները տոնում են Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի երեսուներկուերորդ տարեդարձը։*

*Սովետական ժողովուրդը օրինական հպարտությամբ է նայում իր պայքարի և աշխատանքի արդյունքներին։ Այն ժամանակը, որ մենք ձեզ հետ միասին ապրում ենք, ընկերներ, մեր Հայրենիքի պատմության մեջ կմտնի որպես Ստալինյան մեծ դարաշրջան։*

*Մեր Հայրենիքի պատմության մեջ նրա անծայրածիր տարածություններում բնակվող*



ժողովուրդները դեռ երբեք միմյանց հետ
այսքան համերաշխ չեն եղել: Ազգերի մեջ
մինչև ռևոլյուցիան տիրող երկպառակությունն
ու ատելությունը մեր երկրում արդեն վաղուց
փոխվել են բոլոր ժողովուրդների բարեկա-
մության և եղբայրական համագործակցու-
թյան: Սովետական Միությունում ազգերի
մեծ համագործակցության մեջ ելք են գտել
մեծ և փոքր ժողովուրդների ստեղծարար ու-
ժերը:

Մեր Հայրենիքը իր ամբողջ պատմության
ընթացքում դեռ երբեք չի ունեցել այսքան
արդարացիորեն և լավ կառուցված պետական
սահմաններ: Նայեցեք քարտեզին: Արևմուտ-
քում Ուկրաինան մեկ ընտանիքի մեջ է հա-
վաքել ուկրաինական իր ամբողջ ժողովուրդը:
Վերացվել է պատմական անարդարությունը
Բելոռուսիայի և Մոլդավիայի սահմանների
նկատմամբ: Արևմուտքում չկա այլևս Արևել-
յան Պրուսիան՝ մեր Հայրենիքի վրա հար-
ձակվելու այդ բազմադարյան պլացդարմը:
Մի փոքր ավելի հյուսիս միանգամայն կա-
յուն կերպով նշվել են նոր սահմաններ՝ Լե-
նինգրադի պաշտպանությունն ամրապնդելու
շահերի օգտին: Հեռավոր Արևելքում նոր ձե-
վով, մեր Հայրենիքի անվտանգության շահե-
րի օգտին, հանդես է գալիս Կուրիլյան կղզ-



կղզիների շարքը, իսկ Սախալինը, որը լրիվին
վերականգնվել է որպես ամբողջություն, ա-
վելի մեծ դեր է խաղում Սովետական Միու-
թյան պաշտպանության գործում, քան նրա
կեսը:

Մեր Հայրենիքը իր ամբողջ պատմության
ընթացքում դեռ երբեք շրջապատված չի եղել
մեր պետության նկատմամբ այնքան բարե-
կամ հարևան երկրներով: Սովետական Միու-
թյան հետ այժմ սահմանակից են՝ Ռուսաս-
տանին թշնամաբար վերաբերվող Լեհական
պետության փոխարեն՝ բարեկամական ժո-
ղովրդա-դեմոկրատական Լեհաստանը. հիտ-
լերականների կողմից անդամահատված Չե-
խոսլովակիայի փոխարեն, որը դեռ վերջերս
տնքում էր ֆաշիստական զավթիչների լծի
տակ՝ բարեկամական ժողովրդա-դեմոկրա-
տական Չեխոսլովակիան. հիտլերյան Գեր-
մանիայի նախկին վասալ Հունգարիայի փո-
խարեն՝ բարեկամական Հունգարական ժո-
ղովրդական ռեսպուբլիկան. Սովետական
Միության նկատմամբ թշնամի Ռումինիայի
փոխարեն՝ բարեկամական Ռումինական ժո-
ղովրդական ռեսպուբլիկան. հիտլերյան ռազ-
մական մեքենայի կցորդը հանդիսացող հին
Բուլղարիայի փոխարեն Սովետական Միու-
թյունն ունի հավատարիմ բարեկամ՝ հանձին

Բուլղարական ժողովրդական ռեսպուբլիկայի. լեհական, չեխոսլովակյան, հունգարական, ռումինական, բուլղարական ժողովուրդները հավիտենական բարեկամությամբ են զոդված Սովետական Միության ժողովուրդների հետ. Արևելքում Սովետական Միության հետ սահմանակից է մեզ հետ բազմամյա բարեկամությամբ կապված Մոնղոլական ժողովրդական ռեսպուբլիկան. մեր բարեկամ հարևանն է Երիտասարդ Կորեական ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկան և, վերջապես, օտարերկրյա կապիտալիստների կողմից ստրկացված Չինաստանի փոխարեն մենք այժմ Արևելքում ունենք մեծ հարևան՝ մեզ բարեկամ, ազատ Չինական ժողովրդական ռեսպուբլիկան։ (Բուռն ծափահարություններ):

Դիմավորելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 32-րդ տարեդարձը, սովետական մարդիկ լի են անսասան վստահությամբ կոմունիզմի ուղիով մեր երկրի հետագա առաջընթացի հաջողությունների նկատմամբ։ Երկու սիստեմների՝ սոցիալիզմի սիստեմի և կապիտալիզմի սիստեմի մեծագույն մրցությունում պարզ կերպով երևում է սոցիալիստական սիստեմի գերազանցությունը։



Բավական է հիշել, որ Սովետական Միությունը իր գոյության երեսուներկու տարվա ընթացքում դիմացել է երկու ծանր պատերազմի՝ ներքին և արտաքին թշնամիների դեմ ուղղված 1918—1920 թվերի պատերազմին և հիտլերյան զավթիչների դեմ ուղղված 1941—1945 թվերի Հայրենական Մեծ պատերազմին։ Միաժամանակ հայտնի է, որ Ամերիկայի Միացյալ Նահանգները, որոնք հանդիսանում են կապիտալիզմի ամենաուժեղ երկիրը, ավելի քան 80 տարի ըստ էության զարգացել են խաղաղ պայմաններում, երբ նրանց ոչ ոք չի խանգարել կառուցելու իրենց տնտեսությունը։ Ով ցանկանում է բարեխղճորեն և օբեկտիվորեն գնահատել տնտեսության սոցիալիստական սիստեմի հաջողությունները, նա չպետք է մոռանա այս կարևոր հանգամանքը։

Մեր ժողովուրդը խորապես հավատում է իր գործի արդարությանը։ Մարքսիստական-լենինյան ուսմունքը տիրապետելով մասսաներին, դարձել է մեծագույն ուժ հնի նկատմամբ նորի հաղթանակի, կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։

## I

# ՃԻՇՏ ՈՒՂԻՈՎ ԴԵՊԻ ՆՈՐԱՆՈՐ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐ

Մենք կանգնած ենք դեպի նորանոր հաղ-
թանակներ տանող ճիշտ ուղու վրա։
Հոկտեմբերի երեսուներկուերորդ տարե-
դարձը սովետական ժողովուրդը դիմավորում
է զգալի հաջողություններով սոցիալիստական
ժողովրդական տնտեսության և կուլտուրայի
բոլոր բնագավառներում։
Անցել է երեք տարի և տաս ամիս, երբ
սովետական մարդիկ բոլշևիկյան պարտիա-
յի ղեկավարությամբ ձեռնամուխ եղան
հետպատերազմյան ստալինյան առաջին
հնգամյա պլանի իրագործմանը։ Կատարված
պարտքի բերկրալից զգացմունքով մենք
այժմ կարող ենք ասել՝ ժողովրդական տըն-
տեսության նախապատերազմյան մակար-
դակին մենք ոչ միայն հասել ենք, այլև գե-
րազանցել։ Մենք բոլոր հիմքերն ունենք
կարծելու, որ հետպատերազմյան առաջին
հնգամյակը կկատարվի ժամկետից շուտ։
Հնգամյա պլանով նախատեսված է եղել,
որ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության ար-
տադրանքի ծավալը 1950 թվին պետք է 48



տոկոսով գերազանցի նախապատերազմյան
1940 թվի արտադրությունը։ Ընթացիկ տար-
վա հոկտեմբերին ամբողջ արդյունաբերու-
թյան արտադրանքն ավելի քան 50 տոկո-
սով գերազանցեց 1940 թվի ամսական մի-
ջին թողարկումը։ (Ծափահարություններ)։
Հետևապես ՍՍՌՄ արդյունաբերությունն
այժմ աշխատում է զգալիորեն ավելի բարձր
մակարդակով, քան պատերազմից առաջ և
ավելի բարձր մակարդակով, քան դա հըն-
գամյա պլանով նշված է 1950 թվի համար։
Դա մեր սոցիալիստական շինարարության
հսկայական հաջողությունն է։ Ըստ որում,
կարևոր է ընդգծել, որ արդեն 1949 թվի
սեպտեմբերին արդյունաբերական արտա-
դրական նախապատերազմյան մակարդակը
ձեռք է բերված երկրի այն շրջաններում,
որոնք տուժել էին թշնամու օկուպացիայից։
Ձեռնարկությունների արտադրական կա-
րողությունների օգտագործումը և ներքին
ռեսուրսների մոբիլիզացիան բարելավելու
գործում Կառավարության ձեռք առած մի-
ջոցները հնարավորություն տվին ավելացնե-
լու արդյունաբերական արտադրանքի թո-
ղարկման գծով 1949 թվի պլանով սկզբնա-
պես սահմանված առաջադրանքները։ Այդ
ավելացված պլանները եռամսյակ առ ե-

ռամսյակ գերակատարվում են։ Սովետական Միության ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը, ընթացիկ տարվա ութ ամիսների ընթացքում անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, ավելացել է 20 տոկոսով։ Ըստ որում, պլանից դուրս արդյունահանված են շատ ածուխ ու նավթ, լրացուցիչ կերպով արտադրված է զգալի քանակությամբ մետաղ, էլեկտրաէներգիա, քիմիկատներ, անտառային և շինարարական նյութեր, մեքենաշինության արտադրանք, մասսայական սպառման ապրանքներ։ Հետպատերազմյան հնգամյա պլանի կատարումն ուղեկցվում է արդյունաբերական նոր շինարարության ծավալումով։ Հետպատերազմյան հնգամյակի երեք տարիների և ինն ամիսների ընթացքում վերականգնված, կառուցված և գործարկված է ավելի քան չորս հազար վեց հարյուր պետական արդյունաբերական ձեռնարկություն, չհաշված կոոպերատիվ և այլ մանր ձեռնարկությունները։

Երկրի ժողովրդական տնտեսության վերելքի նկատմամբ բոլշևիկորեն հոգ տանող սովետական աշխատավորների ստեղծագործական անսպառ նախաձեռնությունը բացահայտեց սոցիալիստական արդյունաբե-



րության մեջ թաքնված նորանոր ռեզերվներ։ Բանվորների աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ 1949 թվի ինն ամիսների ընթացքում, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է 14 տոկոսով. իջեցված է արտադրանքի մեկ միավորի համար հումքի, նյութերի, վառելանյութի և էլեկտրաէներգիայի ծախսը. Հաջողությամբ կատարվում է ինքնարժեքի իջեցման պլանը։ 1949 թվի ինն ամիսների ընթացքում արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքը, համադրելի գներով, իջել է 7,2 տոկոսով։

Արտապլանային կուտակումներ ստեղծելու համար առաջավոր բանվորների նախաձեռնությամբ անցյալ տարի սկսված համաժողովրդական շարժումը մեծ արդյունքներ տվեց։ Ստացված խնայողության հաշվին արդյունաբերությունն ավելի քան 20 միլիարդ ռուբլու լրացուցիչ արտադրանք տվեց։

Մեծ հաջողություններ ձեռք բերեց նաև մեր սոցիալիստական հողագործությունը։ Դեռևս 1948 թվին հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը գրեթե հասավ 1940 թվի մակարդակին։ Իսկ այս տար-

մյա բերքը գերազանցեց 1940 թվի մակարդակը։ Հացահատիկային պրոբլեմը մեր երկրում արդեն լուծված է և այդ ասպարեզում հետագա հաջողությունները դրված են ամուր հիմքի վրա։ Մեր սոցիալիստական գյուղատնտեսությունը բոլոր անհրաժեշտ պայմաններն ունի հացահատիկային, տեխնիկական և այլ կուլտուրաների բերքատվությունը տարեց-տարի ավելացնելու համար։

Բարձր և կայուն բերք ապահովելու համար դաշտապաշտպան անտառատնկումների, խոտադաշտային ցանքաշրջանառություններ արմատավորելու, լճակներ և ջրամբարներ կառուցելու պլանի մասին պարտիայի և կառավարության մեկ տարի առաջ ընդունած որոշումը հաջողությամբ իրագործվում է։ Արդեն ավելի քան 500 հազար հեկտար տարածության վրա կատարված են պաշտպանական անտառաշերտերի տնկումներ։ Էլ ավելի մեծ տարածություն է նախապատրաստված 1950 թվի անտառատընկումների համար։

Արագ տեմպով աճում է գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը։ Սոցիալիստական արդյունաբերությունը տարեց-տարի գյուղատնտեսությանը մատակարարում է ավելի ու ավելի շատ բազմազան



գյուղատնտեսական մեքենաներ։ 1949 թվին գյուղատնտեսությունը ստանում է 150 հազար տրակտոր՝ տասնհինգուժանի տրակտորի փոխադրած, 29 հազար կոմբայն, ավելի քան մեկ միլիոն վեց հարյուր հազար կցվող գործիք և այլ գյուղատնտեսական մեքենաներ։ Այլ կերպ ասած, գյուղատնտեսությունը 3—4 անգամ ավելի շատ տրակտոր ու գյուղատնտեսական մեքենաներ կստանա, քան նախապատերազմյան 1940 թվին։

Հացահատիկային տնտեսության վերելքը հնարավորություն ապահովեց ձեռնամուխ լինելու անասնաբուծության՝ գյուղատնտեսության կարևորագույն ճյուղի հետամնացության վերացմանը։ Անասնաբուծության վերելքի և ամեն կերպ զարգացնելու խնդիրը դարձավ պարտիայի և պետության կենտրոնական խնդիրը գյուղատնտեսության մեջ։

Այդ խնդրի իրականացման գործում կոչված է պատմական դեր խաղալու 1949 թվի ապրիլին ընդունված ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը՝ 1949—1951 թվերին կոլխոզային ու սովխոզային հանրային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլանի մասին։ Այդ պլանը նախատեսում է ամենակարճ

ժամկետներում ապահովել անասնաբուծության այնպիսի վերելք, որի շնորհիվ մսի, խոզաճարպի, յուղի, ձվի, կաթի և անասնապահական այլ մթերքների արտադրությունը, երկրի բնակչության մատակարարման համար, 1951 թվին, 1948 թվի համեմատությամբ, պետք է ավելանա առնվազն 1,5 անգամ։ Զգալի մասշտաբով նշված է ավելացնել բրդի, կաշվի և այլ հումքի արտադրությունը՝ թեթև արդյունաբերության համար։

Կոլխոզների և սովխոզների աշխատավորների կողմից մեծ հավանությամբ ընդունված այդ որոշումը հաջողությամբ կենսագործվում է։ Վերջին տարվա ընթացքում կոլխոզները և սովխոզները խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացրել են 20 տոկոսով, ոչխարների գլխաքանակը՝ 13 տոկոսով, խոզերի գլխաքանակը՝ 72 տոկոսով։

Ներկայումս հաջողությամբ ավարտվում են հացամթերումները և գյուղատնտեսական մյուս մթերքների մթերումները։ Ընթացիկ տարում կոլխոզները և սովխոզները 128 միլիոն փութ ավելի հաց տվին պետությանը, քան անցյալ տարի։ (Ծափահարություններ)։ Զգալիորեն ավելի շատ մթերված են նաև



ձիթահունդ, շաքարի ճակնդեղ, միս, կաթ և գյուղատնտեսական այլ մթերքներ։

Այսպիսով, մենք իրավունք ունենք ասելու, որ մեր արդյունաբերությունը և մեր գյուղատնտեսությունը թևակոխել են նոր, հզոր վերելքի շրջան։ Այս բոլորը նոր հնարավորություններ են ստեղծում սովետական ժողովրդի նյութական ու կուլտուրական կենսամակարդակի հետագա բարձրացման համար։

Ի տարբերություն տնտեսության կապիտալիստական սիստեմի, սոցիալիզմը աներևակայելի է առանց պետության ամենօրյա հոգատարության աշխատավորների նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի բարձրացման նկատմամբ,— և դրանումն է նրա զարգացման օրենքը։

Հոգ տանելով աշխատավորների կենսամակարդակի բարձրացման մասին, կառավարությունը 1947 թվի վերջին, դրամական ռեֆորմից և քարտային սիստեմի վերացումից հետո կատարեց մասսայական սպառման ապրանքների գների իջեցում։ Գների այդ իջեցման հետևանքով բնակչությունը տարվա ընթացքում շահեց մոտ 86 միլիարդ ռուբլի։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հե-

տագա վերելքը, մասսայական սպառման
ապրանքների արտադրության աճը և ար-
դյունաբերական արտադրանքի ինքնարժեքի
իջեցման բնագավառում ձեռք բերված նոր
հաջողությունները հնարավորություն ստեղ-
ծեցին կատարել գների երկրորդ իջեցում, ո-
րը և ավարտվեց ընթացիկ տարվա մարտի
մեկին։ Բնակչությունը գների իջեցումից
մանրածախ առևտրի բոլոր հատվածների
գծով տարվա ընթացքում լրացուցիչ կերպով
շահեց մոտ 71 միլիարդ ռուբլի։
Գների իջեցման առաջին և երկրորդ է-
տապների շնորհիվ բարձրացավ ռուբլու գը-
նողունակությունը և բարելավվեց սովետա-
կան ռուբլու կուրսը օտարերկրյա վալյուտա-
ների կուրսի համեմատությամբ։ Բարձրա-
ցավ բանվորների և ինտելիգենցիայի ռեալ
աշխատավարձը, նվազեցին գյուղացիների
ծախսերը՝ արդյունաբերական ապրանքների
գնման ասպարեզում։
Սովետական ժողովրդին ոչ մի «մարշալ-
լացում» չի սպառնում։ Նրան չի սպառնում
կենսամակարդակի իջեցման, ռեալ աշխա-
տավարձի իջեցման մշտական չարիքը, ինչ-
պես այդ տեղի է ունենում կապիտալիզմի
երկրներում։ Սովետական ժողովրդի վրա
դամոկլյան սրի նման չի կախված աղքա-



տության և գործազրկության սպառնալիքը։
Ընդհակառակը, Սովետների երկրում յուրա-
քանչյուր աշխատավոր, իր աշխատանքի
համար ստանալով ըստ իր ընդունակու-
թյունների, բոլոր հնարավորություններն ու-
նի իր կենսամակարդակը բարձրացնելու հա-
մար։
Մեծ չափերով է կատարվում բնակարա-
նային շինարարությունը։ Հետպատերազմ-
յան հնգամյակի երեք տարի ինն ամսվա ըն-
թացքում պետական ձեռնարկությունները,
հիմնարկները և տեղական Սովետները, ինչ-
պես նաև բնակչությունը պետության օգնու-
թյամբ քաղաքներում ու բանվորական ա-
վաններում կառուցել և վերականգնել են ա-
վելի քան 61 միլիոն քառակուսի մետր ընդ-
հանուր տարածությամբ բնակարաններ։
Գյուղական վայրերում այդ նույն ժամանա-
կամիջոցում վերականգնվել և կառուցվել է
ավելի քան երկու միլիոն բնակելի տուն։
Զգալի հաջողություններ են ձեռք բերվել
գիտության, կուլտուրայի և արվեստի բնա-
գավառում։
Վերջին ժամանակներս գիտության հա-
մագործակցությունն արտադրության հետ,
գիտնականներինը՝ առաջավոր բանվորների,
ինժեներների, տեխնիկների, ագրոնոմների,

կոլխոզնիկների հետ անտարակույս ուժեղա-
ցել է։ Կյանքի հետ կապված իսկական գի-
տությունը իր կապերը անխնա կերպով խը-
զում է բոլոր հնացած տրադիցիաների հետ,
չի հանդուրժում անշարժություն, հնամոլու-
թյուն, անտարբերություն նորի ծիլերի նը-
կատմամբ։ Առաջավոր գիտությունը սոցիա-
լիստական հասարակության պայմաններում
համարձակորեն է նայում ապագային։ Սո-
ցիալիստական պետությունը ամենաբարե-
նպաստ պայմաններ է ստեղծում գիտության
զարգացման համար։ Սովետական գիտու-
թյունը անսահման հնարավորություններ է
բացում մեր Հայրենիքի անհամար հարստու-
թյուններն օգտագործելու համար, հավատա-
րիմ կերպով է ծառայում նրա ուժերի և հզո-
րության ամրապնդմանը։

Սովետական գիտությունը ի սպաս է դրվել
խաղաղության և մեր Հայրենիքի ծաղկման
գործին։ Եթե ատոմային էներգիան իմպե-
րիալիստների ձեռքում հանդիսանում է մա-
հաբեր գործիքների արտադրության աղբյուր,
ահաբեկման միջոց, շանտաժի և բռնության
գործիք, ապա սովետական մարդկանց ձեռ-
քում նա կարող է և պետք է ծառայի որպես
մինչև այժմ դեռ չտեսնված տեխնիկական



պրոգրեսի, մեր երկրի արտադրողական ու-
ժերի հետագա արագ աճման հզոր միջոց։

Մեր երկրի արտադրողական ուժերի աճ-
ման հետ միասին զարգանում է ՍՍՌՄ ժո-
ղովուրդների բովանդակությամբ սոցիալիս-
տական, ձևով ազգային կուլտուրան։ Սովե-
տական ժողովուրդը սիրում և գնահատում է
արվեստն ու գեղարվեստական գրականու-
թյունը, որը սոցիալիստական ռեալիզմի մե-
թոդի հիման վրա ճշմարտացիորեն արտա-
ցոլում է մեր երկրի հարուստ, լիարյուն
կյանքը, կոմունիզմ կառուցող սովետական
մարդկանց լարված և անձնուրաց աշխա-
տանքը։ Պարտիան և կառավարությունն ա-
մենօրյա հոգատարություն են ցուցաբերում
արվեստի և գրականության գաղափարա-
կան-գեղարվեստական աճման նկատմամբ։
Սովետական Միությունում արվեստն ու
գրականությունը ծառայում են ժողովրդին,
հարազատորեն կապված են նրա հետ։

Սովետական ժողովուրդը ստեղծարար մեծ
աշխատանք է կատարում։ Ըստ որում նշա-
նակալից է այն, որ մեր սոցիալիստական
մեծ շինարարության բոլոր ճակատներում.
ժողովրդական տնտեսության, տեխնիկայի,
գիտության բոլոր ճյուղերում առաջատար
սկզբունք հանդիս[illegible]վորը, նո-



ըը, պրոգրեսիվը: Դրանում արտահայտվում է մեր հասարակարգի հսկայական առավելությունը: Մեր պարտականությունն է այսուհետև էլ հենվել առաջավորի վրա, բոլոր ուժերով պաշտպանել այն, ամեն կերպ բազմապատկել և տարածել պրոգրեսիվ նախաձեռնությունները և մեր աշխատանքի դրական օրինակները, գործը այնպես վարել, որպեսզի մենք բոլորս հավասարվենք նորարարների, սովետական առաջավոր մարդկանց նվաճումներին:

Սովետական Միությունում ազնիվ աշխատանքը բարձր է գնահատվում և սիրով խրախուսվում է: Այլ կերպ չի էլ կարող լինել այն հասարակության մեջ, որտեղ արտադրական հարաբերությունները հիմնված են ոչ թե շահագործման ու մրցակցության սկզբունքների, այլ ստեղծարար համագործակցության և սոցիալիստական մրցության սկզբունքների վրա:

Պարտիան և Սովետական կառավարությունը տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառների աշխատանքում ձեռք բերված նվաճումների ու հաջողությունների համար լայնորեն կիրառում են պարգևատրումների և մրցանակ տալու սիստեմը:

Հայրենական Մեծ պատերազմն ավարտ-



վելուց հետո անցած ժամանակաշրջանում 1945 թվից մինչև 1949 թիվը ՍՍՌՄ շքանըշաններով ու մեդալներով պարգևատրվել են ավելի քան 510 հազար բանվորներ, կոլխոզնիկներ, գիտնականներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, ծառայողներ, բըժիշկներ, ուսուցիչներ և այլ աշխատողներ՝ արդյունաբերության, տրանսպորտի, գյուղատնտեսության, գիտության, կուլտուրայի և արվեստի բնագավառում իրենց ձեռք բերած հաջողությունների համար: Այդ նույն ժամանակամիջոցում արդյունաբերության 4.800 աշխատողներ և գյուղատնտեսության առաջավորներ ստացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում և գիտության, տեխնիկայի, արվեստի, գրականության 2.540 աշխատողներ ստացել են Ստալինյան մրցանակի լաուրեատի բարձր կոչում:

Ժողովրդական տնտեսության վերելքը, սոցիալիստական կուլտուրայի ծաղկումը բանվորների, կոլխոզնիկների և ինտելիգենցիայի մեջ առաջ են բերում և առաջ կբերեն ըստեղծարար եռանդի, նախաձեռնության և գյուտարարության նոր հորձանք: Մեր պետությունն այսուհետև էլ պատշաճ ձևով կընըշի արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ նորարարների ծառայություն-

ները, մեր երկրի նյութական և հոգևոր կուլտուրայի մեջ խոշոր ավանդ մտցնող, նրա փառքը բազմապատկող գիտության և արվեստի գործիչների ծառայությունները։

Մեր հաջողություններն անվիճելի են։ Բայց ընկեր Ստալինը մեզ սովորեցնում է, որ չի կարելի գոռոզանալ և հանգչել դափնիների վրա։ Այնտեղ, որտեղ կա գոռոզամտություն, բարեհոգի ինքնահանգստացում և ինքնահիացում, որտեղ բացակայում են բոլշևիկյան պահանջկոտությունը և ինքնաքննադատությունը, այնտեղ դադարում է հետագա առաջընթացը, այնտեղ անխուսափելիորեն սկսվում է լճացումը։

Մարդկանց հատուկ է չափազանցնելը։ Մեր շրջանում էլ կան ընկերներ, որոնք տառապում են այդ արատով։ Այդ մարդիկ, եթե սկսում են որևէ բանով հիանալ, ապա այդ անպայման կատարում են շնչակտուր լինելով։ Նրանք չեն կարող ճիշտ գնահատել հաջողությունները և միաժամանակ նկատել թերությունները՝ դրանք վերացնելու համար։ Մինչդեռ մեր հաջողությունները, մեր առաջընթացի թափը հսկայական չափով կախված է այն բանից, թե որքան վճռականորեն ենք մենք պայքար մղում մեր աշխատանքում եղած թերությունների դեմ։ Պար-



տիան մեզ սովորեցնում է լինել անհաշտ թերությունների դեմ մղվող պայքարում։

Մեր պարտիան սովորեցնում է, որ պետք է ազնվորեն խոստովանել սեփական սխալները, որպեսզի ավելի արագ ուղղենք դրանք և այսուհետև չկրկնենք դրանք։ Բայց կան վայ-աշխատողներ, որոնք յուրացրել են պարտիայի այս ցուցումի միայն մեկ մասը։ Նրանք իրենց աշխատանքում անընդհատ սխալներ են թույլ տալիս, դրանք ընդունում են և ապա հանգիստ խղճով նորից սխալներ են անում։ Արդյոք ժամանակը չէ՞ գործի օգտի համար ընդունել, որ այդպիսի առատությամբ սխալներ անող ձախողակ ղեկավարները արգելակում են մեր առաջընթացը։

Ամեն մի գործում ղեկավարության արվեստը ամենից առաջ այն է, որպեսզի նախատեսենք այն դժվարությունները և խոչընդոտները, որոնք կարող են խանգարել կամ արգելակել զարգացումը. նախօրոք մեր ջանքերը գործադրենք այդ դժվարությունները և խոչընդոտները հաղթահարելու համար, որպեսզի դրանով իսկ թույլ չտանք խափանումներ, վերացնենք լճացման վտանգը, ապահովենք առաջընթացը։

Պարտիան հաջողություններ է ձեռք բերել
ի միջի այլոց՝ այն պատճառով, որ նա իր
աշխատանքում համառորեն կիրառել է քննա-
դատության և ինքնաքննադատության մեթո-
դը, ուղղել է թույլ տրված սխալները և դը-
րանով դաստիարակել է կադրերին։

II

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՂՄՆԱԿԻՑ Է ԵՎ ՊԱՇՏՊԱՆՈՒՄ Է ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԸ

Ընկերներ. Եթե նկատի ունենանք մեր ար-
տաքին քաղաքականության մեջ գլխավորը,
ապա, կարճ ասած, այդ գլխավորը արտա-
հայտվում է նրանով, որ Սովետական Միու-
թյունը կողմնակից է խաղաղության և պաշտ-
պանում է խաղաղության գործը։ **(Երկարատև
ծափահարություններ)**։ Սովետական Միու-
թյունն անշեղորեն կիրառում է ժողովուրդնե-
րի խաղաղության և բարեկամության քաղա-
քականություն։ Մենք պատերազմ չենք ցան-
կանում և կանենք հնարավոր ամեն բան այն
կանխելու համար։
Սովետական Միության խաղաղության քա-
ղաքականությունը բխում է սոցիալիստական



հասարակարգի ամենաարմատական, ըսկզ-
բունքային հիմքերից և սովետական ժողո-
վրդի շահերից։ Մինչև վերջը ոչնչացնելով
մեր երկրի ներսում մարդու դարավոր շահա-
գործումը մարդու կողմից, մենք դրանով իսկ
վերացրինք այն պատճառներն ու նախա-
դրյալները, որոնք կապիտալիստական աշ-
խարհում ծնում են մի քաղաքականություն,
որի նպատակն է շահագործել և ստրկացնել
մյուս ժողովուրդներին։
Ստեղծելով զանազան ռասաների և ազգե-
րի պատկանող ժողովուրդների՝ մարդկա-
յին պատմության մեջ չտեսնված եղբայրա-
կան համագործակցության օրինակ, մենք
դրանով իսկ ընդմիշտ վերացրինք այն քա-
ղաքականությունը, որը մեկ պետության բա-
րեկեցությունը կառուցում է մյուս պետու-
թյունների ճնշման վրա։ Մեզ խորթ է այն
քաղաքականությունը, որն իր ղեկավար
սկզբունքն է դարձնում մյուս ժողովուրդների
ազգային սուվերենության ճնշումը։
Սոցիալիստական պետությունը արտաքին
էքսպանսիայի կարիք չի զգում։ Նրան հար-
կավոր չեն գաղութային զավթումները։ Սովե-
տական սոցիալիստական սիստեմն արմա-
տախիլ արավ այն պատճառները, որոնք ա-
ռաջ են բերում տնտեսական ճգնաժամեր,

որոնցից կապիտալիստական աշխարհի պարագլուխները սովորաբար ելք են որոնում ռազմական ավանտյուրաների ուղիներում։

Իմպերիալիստները ռազմական ավանտյուրաների վրա հույս են դնում այն պատճառով, որ վախենում են սոցիալիզմի հետ խաղաղ մրցակցելուց։ Բայց միանգամայն ակներև է, որ ռազմական ավանտյուրաները կատաստրոֆից բացի, ուրիշ ոչ մի բան չեն խոստանում իմպերիալիստներին։

Սովետական մարդիկ չեն վախենում կապիտալիզմի հետ խաղաղ մրցակցելուց։ Դրա համար էլ նրանք հանդես են գալիս ընդդեմ նոր պատերազմի, ի պաշտպանություն խաղաղության, թեև հաստատ գիտեն և բացարձակապես վստահ են իրենց անխորտակելի ուժի վրա։ (Ծափահարություններ):

Սովետական մարդիկ լիովին հաշիվ են տալիս պատմության առաջ իրենց ունեցած պատասխանատվության համար։ Նրանք այդ բանն ապացուցեցին նաև այն ժամանակ, երբ, չխնայելով իրենց ուժերը, իրենց Հայրենիքը և ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը կրծքով պաշտպանում էին ֆաշիստական բարբարոսների գրոհից։ Նրանք այդ բանը ապացուցում են նաև հետպատերազմյան տարիներին, երբ ֆաշիստական բարբարոսների



հայտնի հետնորդները նոր պատերազմի արյունոտ ձեռքը բարձրացնում են աշխարհի վրա։

Հավատարիմ խաղաղության իր անխախտ քաղաքականությանը, Սովետական կառավարությունը հետպատերազմյան ամբողջ ժամանակաշրջանի ընթացքում պաշտպանում է մի ծրագիր, որի իրականացումը կծառայի խաղաղության ու միջազգային անվտանգության լուրջ ամրապնդմանը։ Այդ ծրագիրը պարունակում է մեծ տերությունների համագործակցություն, սպառազինությունների կրճատում և ատոմային զենքի անպայման արգելում։ Այդ ծրագիրը նախատեսում է գերմանական հարցի վերաբերյալ Պոտսդամի որոշումների ճշգրիտ կատարումը, խաղաղ կարգավորում Ճապոնիայի հետ, առևտրատնտեսական կապերի ընդլայնումը երկրների միջև։

Եթե այդ ծրագիրը չի իրագործվում, ապա միայն նրա համար, որ դա դուր չի գալիս պատերազմի հրձիգներին։ Սակայն Սովետական կառավարությունը չի թուլացնում իր ջանքերը խաղաղության ամրապնդման համար մղվող պայքարում։ Նա նորից և նորից առաջարկում է դատապարտել նոր պատերազմի նախապատրաստությունը մի շարք

երկրներում և, ամենից առաջ, Ամերիկայի Միացյալ Նահանգներում ու Անգլիայում, անպայման արգելել ատոմային զենքը և հաստատել միջազգային համապատասխան վերահսկողություն։

Սովետական կառավարությունը վերջերս առաջարկեց, որ հինգ մեծ տերությունները՝ Ամերիկայի Միացյալ Նահանգները, Մեծ Բրիտանիան, Ֆրանսիան, Չինաստանը և Սովետական Միությունը իրար հետ պակտ կնքեն խաղաղությունն ամրապնդելու մասին։ Հավանական է, որ պատերազմի հրրձիգները կձախողեն այդ առաջարկությունը։ Սակայն Սովետական Միությունը այսուհետև էլ պայքար կմղի խաղաղության համար է՛լ ավելի մեծ եռանդով։ Սովետական մարդիկ չեն խնայի ոչ ուժ, ոչ էլ ջանք խաղաղության կողմնակիցների շարքերը ամեն կերպ ամրապնդելու ու ընդլայնելու և ագրեսորների հանցավոր պլանները վիժեցնելու համար։ (Երկարատև ծափահարություններ):

Մենք ապրում ենք այնպիսի դարաշրջանում, երբ օրեց-օր ուժեղանում է ժողովրրդական մասսաների շարժումը դեմոկրատիայի ու սոցիալիզմի ուղիով, երբ խաղաղության ու դեմոկրատիայի լագերը դարձել



է միջազգային ամբողջ խաղաղության հզոր գործոն։

Պատմությունը չգիտի այնպիսի մասսայական շարժում, ինչպիսին հանդիսանում է խաղաղության կողմնակիցների միջազգային լագերի միավորված շարժումը։ Չկա ոչ մի երկիր, որտեղ այդ շարժումը չունենա իր հենակետը, չծավալվի ու չխորանա։

Ինչպես հայտնի է, այս տարվա ապրիլին Փարիզում և Պրագայում տեղի ունեցավ խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրես։ Դրան մասնակցեցին խաղաղության համար, նոր պատերազմի սպառնալիքի դեմ շարժման մասնակիցների 561 ազգային կազմակերպություն, 12 միջազգային միավորում։ Կոնգրեսում ընդամենը ներկայացված էին խաղաղության 600 միլիոն կազմակերպված կողմնակիցներ։

Այդ կոնգրեսն ամենայն ակներևությամբ ցույց տվեց, որ խաղաղության կողմնակիցների միջազգային շարժման հիմքում դրված է ո՛չ թե պացիֆիստական իդեոլոգիան, որը սովորաբար պատերազմը խոսքով ժխտելը զուգորդում է գործնականում լիակատար անգործության հետ, այլ պատերազմի հրձիգների դեմ ակտիվորեն պայքարելու և նրանց նենգ պլաններն ու դիտավորությունները

վիժեցնելու հաստատ վճռականությունը:
Խաղաղության կողմնակիցների կոնգրեսը
բոլոր ժողովուրդներին կոչ արեց ակտիվո-
րեն պայքարել խաղաղության համար: Այդ
կոչը ամենալայն արձագանք ու պաշտպա-
նություն գտավ բոլոր երկրներում: Ժողո-
վուրդները դադարեցին պասիվ լինելուց և
պատրաստ են ակտիվորեն պաշտպանելու
խաղաղության գործը, որովհետև նրանց հի-
շողության մեջ խիստ կենդանի են վերջին
պատերազմի սարսափներն ու զոհերը:

Խաղաղության միջազգային շարժման մե-
ծությունը և ուժն այն է, որ այդ շարժումն
իր դրոշի տակ միավորում է մտավոր ու ֆի-
զիկական աշխատանքի հարյուր միլիոնա-
վոր մարդկանց, անկախ նրանց ռասայա-
կան ու ազգային պատկանելիությունից, նը-
րանց կրոնական ու քաղաքական հայացք-
ներից:

Խաղաղության շարժման ուժը նաև այն է,
որ այդ ուժը զարգանում է կայուն և շարու-
նակ ամրապնդվող կազմակերպական հիմքի
վրա: Հայտնի է, որ աշխարհի համարյա
բոլոր երկրներում ստեղծված են խաղաղու-
թյան կողմնակիցների ազգային միավորում-
ներ: Նրանցից շատերն արդեն անց են կաց-
րել ազգային կոնգրեսներ, որոնք հանդի-



սացան պատերազմի հրձիգների հանցավոր
դիտավորությունները տապալելու ուղղու-
թյամբ ժողովրդական մասսաների կամքի
շատ ազդու ցույցեր:

Վերջերս խաղաղության կողմնակիցների
համամիութենական կոնգրես տեղի ունեցավ
նաև մեզ մոտ, Սովետական Միությունում:
Ինչպես և պետք էր սպասել, այդ կոնգրեսը
ցույց տվեց, որ մեր երկրում խաղաղության
համար մղվող պայքարը սովետական հա-
սարակայնության ո՛չ թե առանձին ջոկատի
գործ է, այլ տասնացիորեն սովետական բո-
լոր մարդկանց գործը, որ Սովետական կա-
ռավարության խաղաղության քաղաքակա-
նությունը հենվում է սովետական ամբողջ
ժողովրդի միահամուռ կամքի վրա: (Երկա-
րատև ծափահարություններ):

Խաղաղության կողմնակիցների ուժերի
միավորումը տեղի է ունենում ո՛չ միայն
ազգային, այլև միջազգային մասշտաբով:
Այս իմաստով դժվար է գերագնահատել
խաղաղությունը պաշտպանող այնպիսի
կազմակերպությունների գործունեությունը,
ինչպես Պրոֆմիությունների համաշխարհա-
յին ֆեդերացիան, որը միավորում է ավելի
քան 70 միլիոն աշխատավորներ. Կանանց
միջազգային դեմոկրատական ֆեդերացիան,

որն ունի 80 միլիոն անդամ. Դեմոկրատա-
կան երիտասարդության համաշխարհային
ֆեդերացիան, որը միավորում է ավելի քան
60 միլիոն երիտասարդ բանվորներ, գյուղա-
ցիներ, ծառայողներ և սովորողներ. Ուսա-
նողների միջազգային միությունը, որն իր
կազմակերպությունները ունի 54 երկրներում
և խաղաղության կողմնակիցներին միավորող
շատ այլ դեմոկրատական կազմակերպու-
թյուններ։

Գնալով ավելի բարձր են հնչում խաղա-
ղության պաշտպանության ձայները, գնա-
լով ավելի լայնորեն է ծավալվում ժողովր-
դական մասսաների հզոր շարժումը ագրե-
սորների ու պատերազմի հրձիգների դեմ՝
հանում ժողովուրդների ազգային անկախու-
թյան ու խաղաղ համագործակցության։ Ան-
ցել են այն ժամանակները, երբ իմպերիա-
լիստները կարող էին պատերազմ պատրաս-
տել, այն խորապես գաղտնի պահելով, և
երբ պատերազմը հանկարծակի պայթում էր
ժողովուրդների գլխին, նրանց դնելով արդեն
սկսած պատերազմի փաստի առաջ։ Խաղա-
ղության կողմնակիցների հզոր շարժումը վ-
կայում է, որ ժողովուրդներն իրենցից ներ-
կայացնում են մի ուժ, որն ընդունակ է
սանձահարելու ագրեսորներին։



Հենց խաղաղության ջանքերի հաջողու-
թյունների կապակցությամբ է, որ ավելի ու
ավելի են կատաղում պատերազմի հրձիգ-
ները։ Օրեց-օր ավելի ու ավելի է մերկանում
խաղաղության գլխավոր հակառակորդների
ծրագիրը։ Այդ ծրագիրը ենթադրում է բռ-
նությունների և նոր պատերազմների միջո-
ցով ստեղծել ամերիկյան համաշխարհային
կայսրություն, որն իր մասշտաբներով պետք
է գերազանցի պատմության մեջ երբևէ գո-
յություն ունեցած նվաճողների բոլոր հա-
մաշխարհային կայսրությունները։ Խոսքը ոչ
ավելի և ոչ պակաս վերաբերվում է այն բա-
նին, որ ամբողջ աշխարհը վերածվի ամե-
րիկյան իմպերիալիստների գաղութի, որ
սուվերեն ժողովուրդները հասցվեն ստրուկ-
ների դրության։

Ինչո՞վ են տարբերվում բոլոր երկրների
ու ցամաքամասերի այսպիսի «ամերիկա-
նացման» ենթարկելու խելացնոր դիտավո-
րությունները նախ Եվրոպայի և ապա ամ-
բողջ աշխարհի «գերմանացման» Հիտլեր—
Գյորինգի խելացնոր պլանից։ Այդ դիտա-
վորությունները ինչո՞վ են տարբերվում
ճապոնական իմպերիալիզմի կողմից ամ-
բողջ Ասիան և Խաղաղ օվկիանոսի ավա-
զանը հպատակեցնելու վերաբերյալ Տանա-

կա—Տոճիոյի ոչ պակաս խելացնոր պլան-
ներից։ Ըստ էության միայն նրանով, որ նոր
պատերազմի հրճիգների ագրեսիվ ծրագիրը
գերազանցում է նրանց գերմանական ու
ճապոնական նախորդների ծրագրերից՝
միասին վերցրած։

Մի՞թե պատերազմի նախապատրաստու-
թյան կուրսը չի դրված տխրահռչակ «Մար-
շալլի պլանի» հիմքում։ Հայտնի է, որ Ա-
րևմտյան Եվրոպայի երկրներին «Մարշալլի
պլանով» այսպես կոչված «օգնություն»
ցույց տալու համար տարեկան հատկացում-
ները կազմում են մոտ 4 միլիարդ դոլլար։
Եվ ահա, պարզվում է, որ միևնույն ժա-
մանակ, մարշալլացված հիմնական եր-
կրները, Ամերիկայի Միացյալ Նահանգնե-
րի ճնշման տակ, ամեն տարի սպառազի-
նության մրցավազքի վրա, միլիտարիզմի
սանձազերծման վրա ծախսում են ավելի
քան 6 միլիարդ դոլլար։ Այսպիսով, «Մար-
շալլի պլանի» գլխավոր ֆունկցիաներից մե-
կը իրոք այն է, որպեսզի ապահովի արևմ-
տա-եվրոպական էկոնոմիկայի արագ միլի-
տարիզացումը։

Միանգամայն պարզ է, թե հատկապես
ի՞նչ նպատակով է ստեղծվել Հյուսիս-ատ-
լանտյան ռազմական պակտը 1949 թվին։



Դա նոր իմպերիալիստական պատերազմի
ուղղակի, անմիջական նախապատրաստման
գործիք է։

Պատերազմի հրճիգների ագրեսիվ կուրսի
կարևորագույն բաղկացուցիչ տարրերից մե-
կը այսպես կոչված ատոմային դիվանագի-
տությունն է, որի ավանտյուրիստական բը-
նույթը այժմ լրիվին բացահայտված է։ Եվ
իսկապես, չէ՞ որ այդ դիվանագիտությունը
կառուցված է եղել բացարձակապես կեղծ
ելակետային հաշվի, այն ենթադրության
վրա, թե իբր Ամերիկայի Միացյալ Նահանգ-
ները վայելում են ատոմային զենքի մենա-
շնորհը։ Իսկ իրականում, ինչպես հայտնի
է, Սովետական կառավարությունը գաղտնիք
չէր պահում այն, որ ինքը ունի ատոմային
զենք։ (Ծափահարություններ)։ 1947 թվին
Սովետական կառավարությունը միջազգա-
յին հասարակայնությանը իրազեկ դարձրեց,
որ այլևս ատոմային ռումբի գաղտնիք գո-
յություն չունի։ Սակայն չափը և ռեալության
զգացումը կորցրած պատերազմի հրճիգ-
ները դեռևս չեն դադարեցնում տխրահռչակ
ատոմային դիվանագիտությունը։

Մենք պատերազմ չենք ցանկանում և հը-
նարավոր ամեն ինչ կանենք այն կանխելու
համար։ Բայց թող, սակայն, ոչ ոք չմտածի,

թե մենք ահաբեկված ենք նրանով, որ պա-
տերազմի հրձիգները զենք են շաչեցնում:
Ոչ թե մենք, այլ իմպերիալիստները և ագ-
րեսորները պետք է վախենան պատերազ-
մից: (Բուռն, երկարատև ծափահարություն-
ներ):
Ի՞նչ է վկայում պատմական փորձը:
Այն վկայում է, որ իմպերիալիստների
կողմից հրահրված առաջին համաշխարհա-
յին պատերազմը հանգեցրեց Հոկտեմբերյան
Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթա-
նակին մեր երկրում: (Ծափահարություններ):
Այնուհետև պատմական փորձը վկայում
է, որ իմպերիալիստների կողմից հրահրված
երկրորդ համաշխարհային պատերազմը
հանգեցրեց Կենտրոնական և Հարավ-արևել-
յան Եվրոպայի մի շարք երկրներում ժողո-
վրդա-դեմոկրատական ռեժիմների հաս-
տատմանը, հանգեցրեց չին մեծ ժողովրդի
հաղթանակին: (Ծափահարություններ):
Կարող է արդյոք որևէ տարակույս լինել,
որ եթե իմպերիալիստները հրահրեն երրորդ
համաշխարհային պատերազմ, ապա այդ
պատերազմը գերեզման կհանդիսանա ար-
դեն ոչ թե առանձին կապիտալիստական



պետությունների համար, այլ համաշխար-
հային ամբողջ կապիտալիզմի համար:
(Բուռն, երկարատև ծափահարություններ):
Պետք է հիշել նաև մի այլ բան: Անցավ
այն ժամանակը, երբ պատերազմի հրձիգ-
ներին հաջողվում էր հիմարացնել ամերիկ-
յան ժողովրդին նրանով, թե իբր նա պա-
տերազմի ծանր զոհաբերություններ չի կրի,
թե իբր պատերազմի համար բավականա-
չափ ճնդամոթային միս կգտնվի Եվրոպա-
յում և Ասիայում: Ամերիկյան ժողովուրդը
սկսում է հասկանալ, որ հասել է այնպիսի
ժամանակ, երբ իմպերիալիստները չեն կա-
րող պատերազմել միայն ուրիշ ժողովուրդ-
ների ձեռքով: Ամերիկյան ժողովուրդը
սկսում է հասկանալ, որ եթե պատերազմի
հրձիգները կազմակերպեն մարդկանց նոր
սպանդ, ապա մայրերի, կանանց, քույրերի,
երեխաների վիշտը կայցելի նաև ամերիկ-
յան մայր ցամաքը: Իսկ դա սարսափելի
վիշտ է: Այդ վշտի մեջ անխուսափելիորեն
շնչասպառ կլինեն և կխեղդվեն պատերազ-
մի հրձիգները: (Ծափահարություններ):

## III

# ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՎ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՈՒԺԵՐԸ ՀԱՂԹԱՆԱԿՈՒՄ ԵՆ

Սովետական Միության աճման ու վերելքի հետ միասին աճում ու ամրապնդվում են դեմոկրատիայի ու սոցիալիզմի ուժերն ամբողջ աշխարհում։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրները Կենտրոնական և Հարավ-արևելյան Եվրոպայի մասում՝ Չեխոսլովակիան, Լեհաստանը, Բուլղարիան, Հունգարիան, Ռումինիան, Ալբանիան 1949 թվին առաջ շարժվեցին սոցիալիստական շինարարության ուղիով։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում ամենակարճ ժամանակամիջոցում լայնորեն ծավալվեց մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը։ Ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկաները թևակոխեցին զարգացման այն շրջանը, երբ ազատ ու անկախ կյանքի բերկրանքը վայելած ժողովուրդն իրեն զգում է երկրի տերը և բոլոր ուժերը նվիրում իր հայրենիքի ամրապնդման ու վերելքի գործին։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում պետական պլանների հիման վրա ա-



րագ տեմպով իրագործվում է ժողովրդական տնտեսության սոցիալիստական ինդուստրացումը։ Արդյունաբերական արտադրանքի նախապատերազմյան մակարդակն զգալի չափով գերազանցված է։ Արդեն առաջին քայլերն են արված գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման ուղղությամբ։ Աճում է ժողովրդի բարեկեցությունը։

Դեռ բոլորովին վերջերս Լեհաստանը, Չեխոսլովակիան, Ռումինիան, Բուլղարիան, Հունգարիան պատկանում էին այն պետությունների թվին, որտեղից անդադար հոսանքով աշխատավորների արտագաղթ էր կատարվում։ Զգալիորեն նվազեցված տվյալներով միայն 1920—1939 թ. թ. ժամանակաշրջանում ավելի քան երեք միլիոն մարդ է արտագաղթել այդ երկրներից։ Այժմ այդ խայտառակ էջը ընդմիշտ շուռ է տրված։ Այժմ այն մարդիկ, որոնք անցյալում հարկադրված էին հեռանալու իրենց հայրենիքից, ետ են դառնում, ակտիվորեն մտնելով սոցիալիզմը կառուցողների շարքերը։

Իմպերիալիստներն իրենց «անհավանությունն» են արտահայտում ժողովրդական դեմոկրատիայի երկրներում գոյություն ունեցող պետական ռեժիմին։ Այդ բանում

զարմանալի ոչինչ չկա: Անբնական կլիներ նրանցից որևէ այլ վերաբերմունք սպասել դեպի այն երկրները, որտեղ իշխանության գլուխ կանգնած է ժողովուրդը, որտեղ ազգային սուվերենությունը առ ու ծախի գործ չէ:

Ինչպես ասում են, չարյաց փոքրագույնը կլիներ, եթե իմպերիալիստները սահմանափակվեին իրենց անհավանությունը սոսկ խոսքով արտահայտելով: Սակայն, իմպերիալիստները դրանով չեն սահմանափակվում: Նրանք իրենց թույլ են տալիս անպատկառորեն միջամտելու ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկաների ներքին գործերին: Նրանք այդ երկրների դեմ կատարում են հանցագործ քայքայիչ աշխատանք, այդ բանի համար առաջին հերթին օգտագործելով հարավսլավյան ֆաշիստների լրտեսական-դիվերսիոն բանդան:

Ռայկի ու նրա գործակիցների լրտեսական կենտրոնի Բուդապեշտի դատավարությունը ցույց տվեց, որ պատերազմի հրձիգները և նրանց հարավսլավյան լակեյները ոչ մի բանի առաջ կանգ չեն առնում: Նրանք փորձում են վիժեցնել ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկաների պատմական վերելքը, նրանց դեմ պատրաստել զինված իմ-



պերիալիստական ինտերվենցիա և այդ երկրները դարձնել իրենց գաղութները:

Բուդապեշտի դատավարությունը միևնույն ժամանակ ցույց տվեց, որ ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ իմպերիալիստների քայքայիչ պլանները իրար հետևից տապալվում են: Տիտո—Ռանկովիչի նացիոնալիստական, ֆաշիստական կլիկը մինչև վերջը մերկացված է որպես իմպերիալիզմի լրտեսական գործակալություն, որն իմպերիալիստների կողմից օգտագործվում է Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ թշնամական աշխատանք կատարելու համար: Այդ մերկացումը ուժգին հարված հասցրեց իմպերիալիստների ոտնձգություններին: Այժմ արդեն ո՛չ բուն տերերին, ո՛չ էլ նրանց հարավսլավյան սպասարկուներին չի հաջողվի դիմակավորվել, որովհետև դիմակները պատռված են, նենգ պլանները մերկացված, հանցագործները բռնված են հանցագործության տեղում: Մենք նրանց կարող ենք ասել. այդպես կլինի այսուհետև էլ, որովհետև այնտեղ, որտեղ ազատ ու անկախ ժողովուրդները իրենք են տնօրինում իրենց բախտը, իմպերիալիստների և նրանց

Համավսլավյան յունկերների ոտնձգությունները անխուսափելիորեն կտապալվեն:

Խաղաղության և դեմոկրատիայի լագերի բացառիկ հաջողությունն է Գերմանական դեմոկրատական խաղաղասեր ռեսպուբլիկայի ստեղծումը: Այդ փաստը միջազգային առաջնակարգ նշանակություն ունի:

Ինչպես ընկեր Ստալինը նշեց Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի պրեզիդենտ պ-ն Վիլհելմ Պիկին և պրեմիեր մինիստր պ-ն Օտտո Գրոտեվոլին ուղղած իր ողջույնի մեջ, «Գերմանական դեմոկրատական խաղաղասեր ռեսպուբլիկայի կազմակերպումը շրջադարձային կետ է Եվրոպայի պատմության մեջ»:

Վերջին երեսուն տարիների ընթացքում Գերմանիան երկու անգամ համաշխարհային ասպարեզ է դուրս եկել, որպես ագրեսիվ ուժ և երկու անգամ արյունահեղ պատերազմ հրահրել, սկզբում՝ առաջին համաշխարհային պատերազմը, իսկ այնուհետև՝ երկրորդ համաշխարհային պատերազմը: Այդ տեղի ունեցավ այն պատճառով, որ գերմանական քաղաքականության գլուխ կանգնած էին գերմանական իմպերիալիստները, ագրեսոր-զավթիչները: Եթե այժմ Գերմանական դեմոկրատական խաղաղասեր



ռեսպուբլիկայի կազմակերպմամբ Գերմանիայում գերակշռում են ժողովրդա-դեմոկրատական ուժերը, որոնք կողմնակից են կայուն խաղաղության, իսկ ագրեսոր-զավթիչները կմեկուսացվեն, ապա դա արմատական շրջադարձ կնշանակի Եվրոպայի պատմության մեջ: Անտարակույս, Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի խաղաղասիրական քաղաքականության առկայության դեպքում, Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականության կողքին, որ վայելում է Եվրոպայի ժողովուրդների համակրանքն ու պաշտպանությունը, — խաղաղության գործը Եվրոպայում կարելի է ապահովված համարել:

Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի ստեղծման մեջ իր արտահայտությունն է գտնում գերմանական ժողովրդի դեմոկրատական ուժերի միավորման ու համախմբման պրոցեսը: Չի՛ կարելի ապահովել եվրոպական, հետևապես նաև միջազգային խաղաղությունը, եթե ճիշտ չլուծվի գերմանական հարցը: Չի կարելի լուծել գերմանական հարցը, եթե գերմանական դեմոկրատիան իր ձեռքը չվերցնի երկրի ճակատագիրը, Ռուրի մագնատներին չզրկի նրանց տնտեսական ու քաղաքական բազա-

յից, եթե նա երկրում չիրագործի դեմոկրատական արմատական վերափոխությունները:

Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի կազմակերպումը նշանակում է, որ Գերմանիայի ներսում այդ կարևորագույն նախադրյալներն արդեն ստեղծվում են գերմանական պրոբլեմը դեմոկրատական հիման վրա արմատապես լուծելու համար:

Գերմանական ժողովրդի դեմոկրատական ուժերն իրենց հայրենիքի ապագայի համար պատասխանատվության զգացմունքով, ամբողջ աշխարհի առաջ պատասխանատվության զգացմունքով ղեկավարվելով, իրենց ձեռքն են վերցնում իրենց երկրի ճակատագիրը: Նրանք ստեղծել են դեմոկրատական ռեսպուբլիկա և այժմ դնում են նոր, խաղաղասեր Գերմանիայի հիմքը:

Այդ ակտը համապատասխանում է գերմանական ամբողջ ժողովրդի ազգային արմատական շահերին: Դա լիովին համապատասխանում է Պոտսդամի կոնֆերանսի որոշումներին: Բոլոր խաղաղասեր ժողովուրդները ողջունում են Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկան, նրանք համակրանք և ակտիվ աջակցություն ցույց տան նրան՝ նրա վսեմ գործում: (**Ծափահարություններ**):



Խաղաղության գործի ամրապնդման համար պատմական նշանակություն է ստանում հաղթանակը չին ժողովրդի, որն իր վրայից դեն է նետել ֆեոդալական ռեակցիայի դարավոր բեռը և իմպերիալիզմի օտարերկրյա լուծը: Լենինը 1923 թվին նշում էր, որ կապիտալիզմի ու կոմունիզմի միջև համաշխարհային պայքարի ելքը վերջին հաշվով կախված է այն բանից, որ Ռուսաստանը, Հնդկաստանը, Չինաստանը կազմում են բնակչության հսկայական մեծամասնությունը և որ բնակչության այդ մեծամասնությունը արտասովոր արագությամբ ներգրավվում է իր ազատագրման պայքարի մեջ: Չին ժողովրդի հաղթանակով Եվրոպայի ու Ասիայի ժողովրդական դեմոկրատիայի երկրները Սովետական սոցիալիստական տերության հետ միասին ունեն մոտ 800 միլիոն մարդ: Պետք է հաշվի առնել նաև, որ բուն կապիտալիստական երկրներում և նրանց գաղութներում կան հարյուր միլիոնավոր աշխատավորներ, որոնք պայքարում են խաղաղության ու դեմոկրատիայի համար:

Ամերիկյան իմպերիալիզմը նկատի ուներ Չինաստանն օգտագործել, որպես Ասիայում ու Խաղաղ օվկիանոսի ավազանում իր տի-

րապետության հիմնական բազայի, որպես Սովետական Միությունը շրջապատելու վճռական օղակներից մեկի։ Այդ նպատակով իմպերիալիստները մտադիր էին Չինաստանը դարձնել ամերիկյան համաշխարհային կայսրության գաղութային վիթխարի կցորդ։ Ամենևին ոչ լրիվ տվյալներով Ամերիկայի Միացյալ Նահանգները գոմինդանյան, հակաժողովրդական ռեժիմը ամրապնդելու, Չինաստանում քաղաքացիական պատերազմը բորբոքելու վրա ծախսել են մոտ 6 միլիարդ դոլլար։

Դեռևս 1925 թվին ընկեր Ստալինը ասել է. «Չինաստանի ռևոլյուցիոն շարժման ուժերն անչափ են։ Դրանք դեռևս երևան չեն եկել ինչպես հարկն է։ Դրանք դեռևս երևան կգան ապագայում։ Արևելքի և Արևմուտքի կառավարողները, որոնք չեն տեսնում այդ ուժերը և պատշաճ չափով հաշվի չեն առնում դրանք, դրանից կտուժեն... Այստեղ ճշմարտությունը և արդարությունը ամբողջովին չինական ռևոլյուցիայի կողմն է։ Ահա թե ինչու մենք համակրում ենք և համակրելու ենք չինական ռևոլյուցիային այն պայքարում, որ նա մղում է չին ժողովրդին իմպերիալիզմի լծից ազատագրելու և Չինաստանը մեկ պետության մեջ միավորելու հա-



մար։ Ով այդ ուժը հաշվի չի առնում և հաշվի չի առնի, նա անպայման տանուլ կտա»։ (Ծափահարություններ)։

Կյանքը լիովին հաստատեց ընկեր Ստալինի կանխագուշակությունը։ Ազգային ազատագրական պայքարի բովում կոփված, մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքով զինված չինական կոմունիստական պարտիան գտնվեց իր պատմական կոչման բարձրության վրա։ Իր առաջնորդ Մաո Ցզե-դունի (բուռն ծափահարություններ) փորձված ղեկավարությամբ նա կազմակերպեց և համախմբեց բանվորներին, գյուղացիներին, ինտելիգենցիային, ազգի բոլոր հայրենասիրական ուժերին։ Նա ստեղծեց ժողովրդաազատագրական հզոր բանակ, որը ջախջախեց ամերիկյան տեխնիկայով զինված և փաստորեն ամերիկյան շտաբների կողմից կառավարվող գոմինդանական հրոսակախմբերը։ Ժողովրդական ռևոլյուցիան անչափ ավելի ուժեղ հանդիսացավ, քան չինական ֆեոդալների և ամերիկյան իմպերիալիստների ռեակցիոն ագրեսիվ բլոկը։

Չինական դեմոկրատիայի հաղթանակով, ոչ միայն չին ժողովրդի, այլև իմպերիալիստների կողմից ճնշվող Ասիայի բոլոր ժողովուրդների պատմության մեջ բացվեց

նոր էջ։ Ասիայի, Խաղաղ օվկիանոսի ավազանի, գաղութային ամբողջ աշխարհի ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը բարձրացավ մի նոր, զգալիորեն ավելի բարձր աստիճանի։ Չինական դեմոկրատիայի հաղթանակը նշանակում է կայուն խաղաղության համար պայքարող համաշխարհային դեմոկրատական հակաիմպերիալիստական լագերի դիրքերի լուրջ ամրապնդումը։

Այսպիսով մենք իրավունք ունենք վստահորեն ասելու, որ դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերն աճում են, մինչդեռ կապիտալիզմի և պատերազմի հրձիգների ուժերը կորուստներ են կրում։

Համեմատելով գործերի դրությունը սոցիալիզմի լագերում և կապիտալիզմի լագերում, մենք չենք կարող անցնել հետևյալ խոշորագույն փաստի կողքից։ Այն ժամանակ, երբ Սովետական Միությունում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում տնտեսությունն անընդհատ զարգանում է, էկոնոմիկան անշեղորեն բարձրանում, Ամերիկայի Միացյալ Նահանգներում վերահաս տնտեսական ճգնաժամի գնալով ավելի շատ նշաններ են երևում։ Ամերիկայում կառավարական ինստանցիաները և պաշտո-



նական որոշ տնտեսագետներ դիմում են ամեն տեսակի խորամանկությունների՝ ամերիկյան ժողովրդից և արտասահմանյան աշխարհից գործի իսկական դրությունը թաքցնելու նպատակով։ Սակայն կեղծ օպտիմիզմի այդ կամպանիան ոչ ոքի չի համոզում։ Ընդհակառակը, այն միայն ուժեղացնում է ամերիկյան հասարակայնության տագնապը, որը հիանալի կերպով հիշում է, որ պրեզիդենտ Հուվերի նույնպիսի հանգստացուցիչ հավաստիացումներից անմիջապես հետո պայթեց 1929—1933 թվերի չըտեսնված ճգնաժամը։

Տնտեսական ճգնաժամի նշանները չի կարելի թաքցնել։ Սկսած անցած տարվա աշնանից Ամերիկայի Միացյալ Նահանգներում արդյունաբերական արտադրությունը սիստեմատիկորեն ընկնում է։ 1949 թվի հուլիսին այն կազմում էր պատերազմի տարիներին ձեռք բերված առավել բարձր մակարդակի միայն 65 տոկոսը, և 18 տոկոսով ավելի ցածր էր, քան 1948 թվի հոկտեմբերին։ 1948 թվի հոկտեմբերից մինչև 1949 թվի հուլիս ամիսը եղած ժամանակամիջոցում պողպատի արտադրությունն իջավ 28 տոկոսով, ընդհանուր մեքենաշինությանը՝ 21 տոկոսով, գունավոր մետաղներինը՝ 32

արդյունաբերությունը՝
տոկոսով, տեքստիլ Ամերիկայի Միացյալ Նա-
27 տոկոսով: սեպտեմբերին
հանգներում օգոստոսին և ինդեքսի
արդյունաբերական արտադրանքի հոկտեմ-
անընդհատ սեզոնային բարձրացումը արդյունաբերական ար-
բերին փոխարինվեց անկմամբ:
տադրության է՛լ ավելի զգալի Ամերիկայի
Պաշտոնական տվյալներով արդյունաբերական
Միացյալ Նահանգների հոկտեմբերին կրճատ-
արտադրանքի ծավալը Դա նշանա-
վեց ավելի քան 11 տոկոսով: մինչև
կում է, որ 1948 թվի հոկտեմբերից Միացյալ
1949 թվի հոկտեմբերը Ամերիկայի արտա-
Նահանգներում արդյունաբերական
դրության մակարդակն իջավ 22 տոկոսով:
Եթե համեմատելու լինենք 1929—1933
թվերի տնտեսական ճգնաժամի սկզբում ար-
դյունաբերական արտադրության ընթացքը
1948—1949 թվերի արդյունաբերական ար-
տադրության ընթացքի հետ, ապա դուրս
կգա, որ 1929—1933 թվերի ճգնաժամի ա-
ռաջին տարում արդյունաբերական արտա-
դրանքի անկումը կազմել է 15 տոկոս, իսկ
1948 թվի հոկտեմբերից սկսված տարում՝ 22
տոկոս:
Չնայած, որ շատ մոնոպոլիստներ գերա-
դասում են ավելի շուտ դիմել արտադրու-



թյան կրճատմանը, քան գների իջեցմանը,
արդեն տեղի ունի ինչպես թեթև, այնպես էլ
ծանր արդյունաբերության արտադրանքի
բորսային և մեծաքանակ գների անկում: Տա-
տանվում և ընկնում են արդյունաբերական
բաժնետոմսերի կուրսերը: Փոքրաքանակ ապ-
րանքաշրջանառությունը կրճատվում է: Ա-
ճում են ապրանքների պաշարները: Ամերիկ-
յան արտահանությունը 1947 թվի առաջին
կիսամյակի համեմատությամբ, երբ այն հա-
սավ ամենաբարձր մակարդակին, իջել է 19
տոկոսով:
Պաշտոնական տվյալներով, Ամերիկայի
Միացյալ Նահանգներում լրիվ գործազուրկ-
ների թիվը վերջին տարիների ընթացքում
կրկնապատկվել է, իսկ ոչ լրիվ շաբաթ աշ-
խատող կիսագործազուրկների հետ միասին
կազմում է ավելի քան 14 միլիոն մարդ: Ի-
րականում, ինչպես այդ հաստատում են ա-
մերիկյան պրոֆմիությունները, Ամերիկայի
Միացյալ Նահանգներում գործազուրկների
թիվը զգալիորեն ավելի է, քան ցույց է տա-
լիս պաշտոնական վիճակագրությունը: Ամե-
րիկյան այժմյան ճգնաժամի առանձնահատ-
կությունը, ի միջի այլոց, այն է, որ այն
հասունանում՝ է այնպիսի իրադրության մեջ,
երբ ամերիկյան մոնոպոլիստները իրենց ի-

սպաս են դրել կապիտալիստական աշխարհի գրեթե ամբողջ էկոնոմիկան։ Այսպես կոչված «Մարշալի պլանի» օգնությամբ նրանք արհեստականորեն սպառում են երկրներում չվաճառված արտադրանքը, իսկ օտարերկրյա պետությունների սպառազինման այսպես կոչված ծրագրի միջոցով արհեստականորեն ծանրաբեռնում են արդյունաբերության մի շարք ճյուղեր։ Իսկ ո՞րն է արդյունքը։ Ամերիկյան կառավարող շրջանները Ամերիկայի Միացյալ Նահանգների էկոնոմիկան բոլորովին էլ չեն փրկել վերահաս ճգնաժամից։ Դրա փոխարեն նրանք արել են իրենցից կախված ամեն ինչ, որպեսզի մարշալլացված երկրների ուսերին դնեն այդ ճգնաժամի փոխհատուցումը։ Ընդորում պետք է նկատի ունենալ, որ Եվրոպայի կապիտալիստական երկրների էկոնոմիկան առանց այն էլ գտնվում է անկման վիճակում։ Այն ժամանակ, երբ Սովետական Միության արդյունաբերական արտադրության ծավալը վերջին քսան տարվա ընթացքում ավելացել է ինն անգամ, կապիտալիստական Եվրոպայի արդյունաբերական արտադրությունն ամբողջությամբ վերցրած այդ քսան տարվա ընթացքում մնացել է միևնույն մակարդակի վրա։



Կապիտալիստական աշխարհում միջազգային տնտեսական կապերը գտնվում են խոր քայքայման վիճակում։ Համաշխարհային առևտուրը գտնվում է ավելի ցածր մակարդակի վրա, քան այն, որ ձեռք էր բերվել ավելի քան քսան տարի առաջ։ Դրամական շրջանառությունը բնութագրվում է ինֆլյացիայով, դրամի գնողունակության խիստ անկմամբ։ Ժողովրդական մասսաների կենսամակարդակը շարունակում է սրընթաց կերպով ընկնել։ Ներկայումս կապիտալիստական աշխարհի երկրներում հաշվվում է առնվազն 40 միլիոն գործազուրկ և կիսագործազուրկ։

Այս պայմաններում Ամերիկայի Միացյալ Նահանգների ուժեղ հարձակումը մարշալլացված երկրների կազմալուծված էկոնոմիկայի դեմ վերջիններիս խոստանում է ամենամռայլ հեռանկարներ։ Կապիտալիստական գրեթե բոլոր պետությունների կողմից վերջերս անցկացված նրանց վալյուտաների արժեզրկումը կարող է հանդիսանալ որպես ամերիկյան իմպերիալիզմի տնտեսական ագրեսիայի ամենավառ օրինակներից մեկը։ Այն բանից հետո, երբ Ամերիկայի Միացյալ Նահանգների մոնոպոլիստները դոլլարի համեմատությամբ արհեստականորեն արժե-

գրկեցին իրենց կապիտալիստական «ընկերակիցների» ազգային վալյուտան, նրանք մտադիր են արագացնել Արևմտյան Եվրոպայի, ինչպես նաև գաղութային երկրների էկոնոմիկայում իրենց կապիտալների ներդրումը։ Դա կարող է միայն մի բան նշանակել՝ ամերիկյան մոնոպոլիստները այժմ պատրաստվում են էժան գնով իրենց ձեռքը վերցնել Արևմտյան Եվրոպայի երկրներում արդյունաբերության ամբողջ ճյուղեր, իրենց ձեռքը վերցնել նաև եվրոպական երկրների գաղութները։ Դրա հետ միասին արժեզրկումը իրենից ներկայացնում է ամերիկյան մոնոպոլիստական կապիտալի և նրա արևմտա-եվրոպական ընկերակիցների նոր հարձակումը աշխատավոր մասսաների կենսամակարդակի վրա։

Հետևաբար, կարելի է ասել, որ աշխարհում այժմ իրադրությունն այնպես է դասավորվում, որ վատ չեն ընթանում այն երկրների ու ժողովուրդների գործերը, որոնք կառավարվում են առանց այսպես կոչված ամերիկյան «օգնության» և մենք վստահ ենք, որ այսուհետև էլ ավելի լավ կընթանան։ (Ծափահարություններ)։ Իսկ բուն Ամերիկայում և այն երկրներում, որոնց նա «օգնում



է», գործերը գնալով ավելի են վատթարանում։

Նման դրության դեպքում զարմանալի ոչինչ չկա, որ իմպերիալիզմի լագերը բռնված է տագնապով, իսկ այդ լագերից առավել լկտիները կատաղության մեջ են ընկնում, գազազում և ուժեղացնում են իրենց քայքայիչ քաղաքականությունը այն երկրների դեմ, որոնք չեն ցանկանում ծունկ չոքել ամերիկյան միլիարդատերերի առաջ։

***

Ընկերներ։ Համարյա մեկ երրորդ դար է մեզ բաժանում այն նշանակալից օրվանից, երբ երկրագնդի մեկ վեցերորդ մասում նոր դարաշրջան սկսվեց մարդկության պատմության մեջ։

Այսօր մենք, սովետական մարդիկս, առանձնահատուկ հպարտությամբ ենք վերհիշում այն պատմական գործերը, որ կատարել են մեր պարտիան, մեր ժողովուրդը Լենինի և Ստալինի ղեկավարությամբ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան ապրում և հաղթում է մեր պանծալի բոլշևիկյան պարտիայի գործերի մեջ, սովետական երկրի հերոս ժողովրդի գործերի մեջ։ Դեպի կոմունիզմ մեր առաջընթաց շարժման մեջ առաջատար, ուղղություն

ցույց տվող ուժը մեր կոմունիստական պար-
տիան է: Պարտիան համախմբում, ոգեշնչում
և կազմակերպում է սովետական մարդկանց,
միավորում է նրանց ջանքերը՝ հասնելու հա-
մար մեծ նպատակին՝ կոմունիստական հա-
սարակության կառուցմանը: Նրա արյու-
նակցական կապը ժողովրդի հետ ամրա-
պնդվում է օրեց-օր: Դրա մեջ է պարտիայի
անպարտելիության և Սովետական պետու-
թյան հզորության աղբյուրը: Մեր պարտիան
միասնական, միաձույլ և անխորտակ ուժ է,
համախմբված ինչպես երբեք Կենտրոնական
Կոմիտեի շուրջը, ընկեր Ստալինի շուրջը:
(Բուռն, երկարատև ծափահարություններ, ո-
րոնք վերածվում են օվացիայի): Բոլշևիկյան
շարքերի այդ միասնությունը միշտ եղել է,
հանդիսանում է ու կլինի պարտիայի ամ-
րության հիմքը: (Ծափահարություններ):
Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան, ժողո-
վուրդների խաղաղության համար, մարդու
կողմից մարդու շահագործումը վերացնելու
համար, ժողովուրդների իրավահավասարու-
թյան ու բարեկամության համար պայքարի
նրա գաղափարներն ապրում ու հաղթում են
սոցիալիստական շինարարության մեջ, որ
ծավալված է ժողովրդական դեմոկրատիայի
բոլոր երկրներում, Չին մեծ ժողովրդի պատ-



մական վերելքում, Գերմանական դեմոկրա-
տական խաղաղասեր ռեսպուբլիկայի ստեղծ-
ման ու ամրապնդման մեջ:
Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան ապրում
և հաղթանակում է այն պայքարում, որ խա-
ղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի
կողմնակիցների հզոր ճակատը մղում է իմ-
պերիալիստական ագրեսիայի ուժերի դեմ,
նոր պատերազմի հրձիգների դեմ:
Թող մոլեգնեն պատմության կողմից դա-
տապարտվածները: Որքան ավելի շատ են
գազազում պատերազմի հրձիգները լագե-
րում, այնքան ավելի հաստատությունն և տո-
կունությունն կլինի խաղաղության մեր լա-
գերում: Մենք մեր հանճարեղ ուսուցիչ և ա-
ռաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ
վստահորեն ընթանում ենք դեպի վաղվա օրը:
(Բուռն, երկարատև ծափահարություններ):
Մենք հաստատ գիտենք՝ սոցիալիզմի և դե-
մոկրատիայի հաղթանակը ամբողջ աշխար-
հում անխուսափելի է:
Կեցցե՛ Հոկտեմբերյան Սոցիալիստական

*Մեծ ուսուցչին և նրա անպարտելի դրոշը:* (Ծափահարություններ):

*Կեցցե՛ մեր կոմունիստական պարտիան:* (Ծափահարություններ):

*Կեցցե՛ խաղաղությունն ամբողջ աշխարհում:* (Երկարատև, բուռն ծափահարություններ, բոլորը ոտքի են կանգնում: Բացականչություններ՝ «Կեցցե՛ ընկեր Ստալինը», «Մեծ Ստալինին— փա՛ռք», «Ուռա՛ մեծ Ստալինին»):



## ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

Լ. Ն. ՏՈԼՍՏՈՅ.— Երկերի ժողովածու. *Հատոր 6-րդ: 1949 թ., 464 էջ, գինը 20 ռ.:*

ՅՈՒԼԻՈՍ ՖՈՒՉԻԿ.— Խոսք մահապատժից առաջ: *1949 թ., 217 էջ, գինը 5 ռ.:*

Ջ. ԴԱՐՅԱՆ.— Գարուն: *1949 թ., 139 էջ, գինը 8 ռ.:*

Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

